# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ

№ 10 1948

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»-Ի ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---


Խմբագրության հասցեն — Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և Ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 33—86։


---

# ԱԳԻՏԱՏՈՐԸ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊԻՉՆ Է

Լայն մասսաների աշխատանքի ամենահարուստ փորձով ապացուցված է սոցիալիստական մրցության, իբրև սոցիալիզմի կառուցման կոմունիստական մեթոդի կենսական մեծ ուժը: Ստալինյան հնգամյակների տարիներին սոցիալիստական մրցությունը հանդիսացավ հնգամյա պլանները ժամկետից շուտ կատարելու, երկրի սոցիալիստական ինդուստրիալիզացիայի և գյուղատնտեսության կոլեկտիվացման, մեր երկրում սոցիալիզմի կառուցման կարևորագույն պայմաններից մեկը:

Ընկեր Ստալինը սոցիալիստական մրցությունն անվանել է մասսաների գործունյա, ռևոլյուցիոն ինքնաքննադատության արտահայտություն, որ հենվում է միլիոնավոր աշխատավորների ստեղծագործական նախաձեռնության վրա: Սոցիալիստական մրցությունը պայքար է աշխատանքի հնացած նորմաների դեմ, աշխատանքի մեջ հետամնա-

ցության և դանդաղաշարժության դեմ, նա առաջավոր բանվորների և կոլխոզնիկների աշխատանքային ստեղծագործական նախաձեռնությունն է պրակտիկայում, արտադրության մեջ։

Ներկայումս սոցիալիստական մրցությունը հետպատերազմյան ստալինյան հնգամյակը չորս տարում կատարելու կարևորագույն պայմանն է։ Այստեղից էլ բխում են արտադրության մեջ, կոլխոզում ագիտատորների առջև կանգնած լուրջ խնդիրները՝ լինել ավանգարդում և կազմակերպել սոցիալիստական մրցությունը։ Ագիտատորն ինքը արտադրության մեջ պետք է լինի առաջավոր, կատարի ու գերակատարի իր արտադրական նորմաները, հեղինակություն վայելի բանվորների ու կոլխոզնիկների մեջ։ Ագիտատորը պետք է տեղյակ լինի իրերի դրությանը այն ձեռնարկությունում ու կոլխոզում, որտեղ աշխատում է, օրվա նորությունները ամենից առաջ իմանա և հաղորդի մնացած աշխատողներին։ Նա պետք է ժամանակին իմանա, ուսումնասիրի պարտիայի և կառավարության որոշումները, կարողանա բոլշևիկյան կենդանի խոսքը հասցնել լայն մասսաներին։

Ագիտատորի դրական աշխատանքի կարևորագույն պայմանն է հանդիսանում ամեն-



օրյա, սիստեմատիկ քաղաքական ագիտացիան, որը պետք է սերտորեն կապված լինի տվյալ ձեռնարկության, կոլխոզի արտադրական կոնկրետ խնդիրների հետ։

Ագիտատորի յուրաքանչյուր զրույցի նպատակը պետք է լինի ձգտել աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, արտադրական պլանների կատարմանն ու գերակատարմանը, ուստի և ագիտատորը պարտավոր է զրույցը կոնկրետացնել իր ձեռնարկության օրինակներով, ցույց տալ սոցիալիստական մրցության լավագույն առաջավորներին, ինչպես նաև ստանձնած պարտավորությունների կատարման մեջ ետ մնացողներին։

Զրույցները, ընթերցումներն ու քաղաքական հարցերի պարզաբանումները նա պետք է շաղկապի սոցիալիստական մրցությունը կազմակերպելու հարցերի հետ։ Ագիտատորը պետք է գիտենա սոցիալիստական մրցության առաջավորներին ոչ միայն նրանց ազգանուններով, այլև թե նրանցից ով ի՞նչպես է կատարում իր պլանները և ի՞նչպիսի մեթոդներով է հասնում դրական արդյունքների, նա պետք է լավագույն փորձը մասսա-

յականացնի զրույցների ընթացքում, պատ-
թերթերի միջոցով։

Միևնույն ժամանակ ագիտատորն իր աշ-
խատանքի ընթացքում պետք է խուսափի
ադմինիստրացիայի, ցեխի պետի, բրիգադի-
րի և այլ պաշտոնյաների ֆունկցիաներին մի-
ջամտելուց։ Նա պետք է այնպես հմտորեն
կազմակերպի իր աշխատանքը, որ կարողա-
նա ամեն կերպ օգնել պարտիական ու կոմե-
րիտական կազմակերպություններին սոցիա-
լիստական մրցությունը կազմակերպելու գոր-
ծում, իրեն հանդես բերի իբրև սոցիալիստա-
կան մրցության իսկական կազմակերպիչ։
Իր հայրենասիրական օրինակով ագիտատո-
րը պետք է ետ մնացողներին ոգեշնչի նորա-
նոր աշխատանքային սխրագործություններ
կատարելու համար։

Երևանի Գյուղգործիքների գործարանի ա-
գիտատոր՝ փականագործ Գուրգեն Ղազան-
չյանը դեռ անցյալ տարվա սեպտեմբերին
կատարեց իր հնգամյա պլանը։ Նա սոցիա-
լիստական մրցության իսկական կազմակեր-
պիչ է, մեծ հեղինակություն է վայելում գոր-
ծարանի բանվորների մեջ, նրա ագիտացիան
կոնկրետ է և նպատակաձգուն։ Իր զրույց-
ների ընթացքում առաջավոր ագիտատորը
բանվորների գիտակցությանն է հասցնում



այն միտքը, որ յուրաքանչյուր բանվորի պլ-
լանի կատարումից ու գերակատարումից է
կախված հնգամյակի կատարումը չորս տա-
րում, որ ազնիվ, բարեխիղճ աշխատանքը,
ինտենսիվությունը աշխատանքի մեջ, աշ-
խատանքային ժամանակի ռացիոնալ օգտա-
գործումը յուրաքանչյուր սովետական քաղա-
քացու պարտքն է։

Ընկ. Ղազանչյանի ագիտացիոն աշխա-
տանքը դրական արդյունքներ է տալիս. այն
ցեխում, որտեղ նա է աշխատում, սոցիալիս-
տական մրցության մեջ ընդգրկված են բո-
լոր բանվորներն ու վարպետները, որոնք
սիստեմատիկաբար կատարում և գերակա-
տարում են իրենց նորմաները։

Ս. Մ. Կիրովի անվան գործարանի № 2—5
ցեխի ագիտատոր Ալեքսանդրա Կոստյուկո-
վան սիստեմատիկաբար իր ցեխի բանվորնե-
րի համար կազմակերպում է զրույցներ և
թերթերի ընթերցանություն, յուրաքանչյուր
զրույց կապելով ցեխի արտադրական հարցե-
րի հետ։ Զրույցի ժամանակ նա հիշատակում
է ոչ միայն տվյալ ցեխի, այլև գործարանի
առաջավոր բանվորների ու բանվորուհիների
անունները, ուսումնասիրում է առաջավոր
ստախանովականների փորձը և այն հմտորեն
հաղորդում մյուս աշխատողներին։ Ընկ.

Կոստյուկովայի մոտ առաջին պլանի վրա է գտնվում քաղաքական ագիտացիան, ըստ որում զրույցների նյութը նա վերցնում է կենտրոնական թերթերից, «Ագիտատորի բլոկնոտ»-ից և գործարանային «Կիրովեց» թերթից, որը նա սիստեմատիկաբար կարդում է իրենց ցեխի բանվորների համար, քաղաքական հարցերը հմտորեն կապակցելով սոցիալիստական մրցության պրակտիկ խնդիրների հետ։

Ընկ. Կոստյուկովան չի բավարարվում միայն սոցիալիստական մրցության պայմանագրեր կնքելով ցեխի սահմաններում և գործարանի մյուս ցեխերի հետ, այլ ձգտում է, որ սոցմրցության մեջ մտնող յուրաքանչյուր բանվոր և բանվորուհի ստանձնի կոնկրետ պարտավորություններ և պայքարի նրանց կատարման ու գերակատարման համար։

Կոլխոզային արտադրության մեջ լավ աշխատող ագիտատորի օրինակ է ծառայում Արտաշատի շրջանի Դարղալու գյուղի Փարիզյան Կոմունայի անվան կոլխոզի օղակներից մեկի ագիտատոր ընկ. Նինա Հակոբյանը, որ ինքը հենց բամբակի դաշտերի ու խաղողի այգիների առաջավորներից մեկն է։ Բացի այն, որ նա իր աշխատանքով, անձնական օրինակ է տալիս ուրիշներին, սիստե-



մատիկաբար հանգստի ժամերին կոլխոզնիկների համար կազմակերպում է զրույցներ, թերթերի ընթերցանություն։ Նրա եռանդուն աշխատանքի շնորհիվ, օղակի բոլոր անդամները սոցիալիստական մրցության մեջ մտան և 1947 թվականին գերակատարեցին ստանձնած պարտավորությունները։ Առաջավոր կոլխոզնիկների աշխատանքի լավագույն փորձը նա հաղորդում է մյուսներին, օրինակ է ծառայում կոլխոզի ագիտատորների համար։

Ընկ. Նինա Հակոբյանի համոզիչ, գործարար զրույցը կոլխոզնիկներին մեծ չափով օգնում է աշխատանքի մեջ։ Յուրաքանչյուր օր,— ասում է ընկ. Հակոբյանը,— ես ամփոփում եմ, թե ինչպես են կատարված օրվա նորմաները, և ետ մնացողներին հիշեցնում եմ սոցմրցությամբ ստանձնած պարտավորությունների մասին։

1948 թվականը, հետպատերազմյան ստալինյան հնգամյակի երրորդ տարին սկսվեց քաղաքում և գյուղում սոցիալիստական մրցության լայն ծավալումով։ Տասնյակ ու հարյուր հազարավոր բանվորներ, բազմաթիվ ձեռնարկություններ, արձագանքելով լենինգրադցիների հայրենասիրական նախաձեռնությանը, պատրաստակամություն հայտնե-

Կոստյուկովայի մոտ առաջին պլանի վրա է գտնվում քաղաքական ագիտացիան, բատ որում զրույցների նյութը նա վերցնում է կենտրոնական թերթերից, «Ագիտատորի բլոկնոտ»-ից և գործարանային «Կիրովեց» թերթից, որը նա սիստեմատիկաբար կարդում է իրենց ցեխի բանվորների համար, քաղաքական հարցերը հմտորեն կապակցելով սոցիալիստական մրցության պրակտիկ խնդիրների հետ։

Ընկ. Կոստյուկովան չի բավարարվում միայն սոցիալիստական մրցության պայմանագրեր կնքելով ցեխի սահմաններում և գործարանի մյուս ցեխերի հետ, այլ ձգտում է, որ սոցմրցության մեջ մտնող յուրաքանչյուր բանվոր և բանվորուհի ստանձնի կոնկրետ պարտավորություններ և պայքարի նրանց կատարման ու գերակատարման համար։

Կոլխոզային արտադրության մեջ լավ աշխատող ագիտատորի օրինակ է ծառայում Արտաշատի շրջանի Դարղալու գյուղի Փարիզյան Կոմունայի անվան կոլխոզի օղակներից մեկի ագիտատոր ընկ. Նինա Հակոբյանը, որ ինքը հենց բամբակի դաշտերի ու խաղողի այգիների առաջավորներից մեկն է։ Բացի այն, որ նա իր աշխատանքով, անձնական օրինակ է տալիս ուրիշներին, սիստե-



մատիկաբար հանգստի ժամերին կոլխոզնիկների համար կազմակերպում է զրույցներ, թերթերի ընթերցանություն։ Նրա եռանդուն աշխատանքի շնորհիվ, օղակի բոլոր անդամները սոցիալիստական մրցության մեջ մտան և 1947 թվականին գերակատարեցին ստանձնած պարտավորությունները։ Առաջավոր կոլխոզնիկների աշխատանքի լավագույն փորձը նա հաղորդում է մյուսներին, օրինակ է ծառայում կոլխոզի ագիտատորների համար։

Ընկ. Նինա Հակոբյանի համոզիչ, գործարար զրույցը կոլխոզնիկներին մեծ չափով օգնում է աշխատանքի մեջ։ Յուրաքանչյուր օր,— ասում է ընկ. Հակոբյանը,— ես ամփոփում եմ, թե ինչպես են կատարված օրվա նորմաները, և ետ մնացողներին հիշեցնում եմ սոցմրցությամբ ստանձնած պարտավորությունների մասին։

1948 թվականը, հետպատերազմյան ստալինյան հնգամյակի երրորդ տարին սկսվեց քաղաքում և գյուղում սոցիալիստական մրցության լայն ծավալումով։ Տասնյակ ու հարյուր հազարավոր բանվորներ, բազմաթիվ ձեռնարկություններ, արձագանքելով լենինգրադցիների հայրենասիրական նախաձեռնությանը, պատրաստակամություն հայտնե-

ջին հնգամյակը կատարելու չորս տարում։ Սկսվել է անդուլ պայքարը այդ խնդրի պրակտիկ կենսագործման համար։ Այս՝ սոցիալիստական մրցության մի նոր, ավելի բարձր էտապն է, երբ մրցության մեջ մտնում են ամբողջ ցեխեր, ձեռնարկություններ, ոչ միայն օրական նորմաները կամ ամսական պլանները, այլև ամբողջ հնգամյա պլանը ժամկետից շուտ կատարելու և գերակատարելու համար։

Սոցիալիստական մրցության ուժը նրա կոնկրետության մեջ է։ Ագիտատորները պետք է ձգտեն, որպեսզի բանվորների ու կոլխոզնիկների պարտավորությունները լինեն կոնկրետ, պարունակեն պարզ ու ճըշգրիտ տվյալներ աշխատանքի բնույթի, ծավալի, պարտավորությունների կատարման ժամկետների մասին։ Ագիտատորները պետք է հետևեն, որպեսզի սոցմրցման պայմանագրերում չլինեն այնպիսի պարտավորություններ, որոնք բանվորի կամ կոլխոզնիկի ուղղակի պարտականությունն են։

Սոցիալիստական մրցության առանձնահատկությունն այժմ ոչ միայն այն է, որ մըրցությունը դարձել է ընդհանուր, այլև այն, որ



մրցության մասնակիցները, սկսած գործարանից, ֆաբրիկայից, կոլխոզից ու ամբողջ շրջանից՝ մինչև բրիգադան, օղակն ու առանձին կոլխոզնիկը, հաշվի առնելով եղած հնարավորությունները, առանձնում են միանգամայն կոնկրետ պարտավորություններ։ Այս բանը, իհարկե, իր կնիքն է դնում նաև ագիտացիոն աշխատանքի վրա, տալով նրան ավելի կոնկրետ բնույթ, դարձնելով այն ավելի նպատակասլաց։

Յուրաքանչյուր ագիտատոր պետք է սերտ կապ պահպանի պարտկազմակերպչի հետ, սիստեմատիկաբար տեղեկացնի նրան սոցիալիստական մրցության վիճակի մասին, մրցության հետանկարային հարցերը դնի պարտիական բյուրոյի քննարկմանը։ Առանց պարտիական կազմակերպության օգնության ագիտատորը չի կարող վերացնել սոցմըրցության կազմակերպական և տեխնիկական թերությունները։

Սովետական ժողովուրդը Լենինի-Ստալինի պարտիայի իմաստուն առաջնորդությամբ, հաջողությամբ պայքարում է հետպատերազմյան հնգամյա պլանը ժամկետից շուտ կատարելու համար։ Հնգամյակի առաջին եր-

կու տարիները և երրորդ տարվա այս մի քանի ամիսները ցույց են տալիս, որ նոր հնգամյա պլանը հաջողությամբ է կատարվում, որովհետև ամբողջ սովետական ժողովուրդը ակտիվ պայքարի է մտել մեր երկրի ժողովրդական տնտեսության վերականգնման ու հետագա վերելքի համար, սովետական մարդիկ ամեն օր ցույց են տալիս սոցիալիստական հայրենիքի բարգավաճման համար կատարվող հերոսական աշխատանքի նորանոր փայլուն օրինակներ։

Ընկեր Ստալինը արտադրական պլանի մասին ասել է. «Արտադրական պլանը միլիոնավոր մարդկանց կենդանի ու պրակտիկ գործունեությունն է։ Մեր արտադրական պլանի ռեալությունը նոր կյանք ստեղծող միլիոնավոր աշխատավորներն են։ Մեր ծրագրի ռեալությունը կենդանի մարդիկ են, այդ՝ մենք ենք, ձեզ հետ միասին, աշխատանքի մեր կամքը, նոր ձևով աշխատելու մեր պատրաստակամությունը, պլանը կատարելու մեր վճռականությունը»։

Արդյունաբերական ձեռնարկությունների, նորակառույցների, կոլխոզային ու սովխոզային դաշտերի ագիտատորները սոցիալիս-



տական մրցության նոր վերելքի պայմաններում պետք է իրենց աշխատանքը կազմակերպեն այնպես, որ մրցության մեջ ներգրավեն յուրաքանչյուր բանվորի ու բանվորուհու, կոլխոզնիկի ու կոլխոզնիկուհու, ծառայողի, ինտելիգենցիային և մեր արդյունաբերության ու գյուղատնտեսության բոլոր աշխատողներին՝ հետպատերազմյան ստալինյան հնգամյակը չորս տարում կատարելու համար։

# ԺԱՄԱՆԱԿԻՆ ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏԵԼ ԵՎ ԱՆՑԿԱՑՆԵԼ ԽՈՏՀՈՒՆՁՆ ՈՒ ՍԻԼՈՍԱՑՈՒՄԸ

Կոլխոզային գյուղում շուտով սկսվելու է խոտհունձը— գյուղատնտեսական ամենակարևոր աշխատանքներից մեկը։

Մեր Ռեսպուբլիկայի կոլխոզներն այս տարի պետական պլանի համաձայն կատարելու են 250 հազար հեկտար բնական և ավելի քան 40 հազար հեկտար ցանովի խոտհարքների հունձ։ Այս լուրջ առաջադրանքի ժամանակին կատարումը հնարավորություն կտա մեր կոլխոզներին ստեղծել անասնակերի ամուր բազա, որը վճռական պայման է հանդիսանում անասնապահության հետագա զարգացման, անասունների մթերատվության բարձրացման համար։

Պարտիան ու կառավարությունը գյուղատնտեսության ֆրոնտի աշխատողների առջև խնդիր են դրել խոտհնձի և սիլոսացման



աշխատանքներն ավարտել մինչև հասկավոր կուլտուրաների բերքահավաքի սկսելը։

Պետական այդ կարևոր խնդիրն իրականացնելու համար անհրաժեշտ է լուրջ կերպով նախապատրաստվել խոտհնձի աշխատանքներին, մոբիլիզացնել կոլխոզային ողջ ուժերը, օգտագործել տնտեսության բոլոր հնարավոր միջոցները։

Խոտհնձի աշխատանքների հաջող նախապատրաստումը մեծ չափով պայմանավորված է դաշտավարական բրիգադաների ներսում աշխատանքի ճիշտ կազմակերպումից՝ հնձվորների, սայլապանների և օժանդակ ուժերի ճիշտ դասավորումից ըստ աշխատանքի տեղամասերի։ Յուրաքանչյուր բրիգադա և օղակ պետք է որոշակի իմանա իր աշխատանքի տեղը։ Դրա համար հարկավոր է մինչև խոտհնձի սկսելը ինչպես բնական, այնպես էլ ցանովի խոտհարքներն ու բոլոր այն տարածությունները, որտեղ հնարավոր է խոտհունձ կատարել, նախօրոք ամրացնել բրիգադաներին, իսկ բրիգադաների ներսում՝ օղակներին։ Դա հնարավորություն կտա բրիգադիրներին ղեկավարել օպերատիվ կերպով, խոտհնձի աշխատանքները զուգակցել ցանքերի մշակման ու դաշտավարական մյուս աշխատանքների հետ։

Յուրաքանչյուր կոլխոզի առաջնահերթ խնդիրն է մինչև խոտհնձի սկսելը լրիվ նախապատրաստել, վերանորոգել, կարգի բերել խոտհնձի մեքենաները, ձեռքի գործիքները և օժանդակ ինվենտարը։ Անցյալ տարի մի շարք կոլխոզներ այդ գործը վատ կազմակերպելու հետևանքով, չկարողացան կուտակել անհրաժեշտ քանակությամբ անասնակեր, որը և լուրջ կերպով ազդեց հանրային հոտի ձմեռումը հաջող կազմակերպելու գործի վրա։ Այդ սխալը չկրկնելու համար, հարկավոր է խոտհնձի աշխատանքներն սկըսելուց դեռ 20 օր առաջ, բոլոր բրիգադաները ապահովել պահանջվող քանակությամբ խոտհնձի մեքենաներով, ձեռքի գործիքներով՝ գերանդիներով, եղաններով, փոցխերով, սրաքարերով, պարաններով և այլ օժանդակ ինվենտարով ու փոխադրական միջոցներով։

Խոտհունձը սկսելուց առաջ, կոլխոզվարչությունը գյուղատնտեսական մասնագետների օգնությամբ կազմում է խոտհնձի աշխատանքների օրացուցային պլան՝ հնգօրյակներով։ Պլանավորումը կատարվում է այն հաշվով, որ խոտհունձն ավարտվի մինչև հասկավոր կուլտուրաների բերքահավաքի սկսելը։ Օրացուցային պլանի մեջ պետք է նախատե-



սել բոլոր հնձող մեքենաների ու գործիքների, աշխատող ձեռքերի լրիվ օգտագործումն ու ճիշտ դասավորումը, աշխատանքն սկսելու և ավարտելու ժամկետները։ Նպատակահարմար է աշխատանքի օրացուցային պլանը քննության դնել կոլխոզնիկների ընդհանուր ժողովում, որտեղ կոլխոզնիկները կարող են շատ պրակտիկ առաջարկություններ անել՝ խոտհնձի ժամկետներն արագացնելու, մեծ տարածությունների վրա խոտհունձ կատարելու համար։

Աշխատանքային բարձր կազմակերպվածությունը, ամուր կարգապահությունը և ճիշտ կազմված օրացուցային պլանը հնարավորություններ կստեղծեն խոտհնձի աշխատանքներն ավարտել ոչ միայն սահմանված ժամկետին, այլև կուտակել նախատեսված պլանից ավելի անասնակեր։

Խոտհունձը պետք է կատարել հիմնական խոտաբույսերի ծաղկման շրջանում, ամենասեղմ ժամկետում։ Թույլ չտալ, որ խզում առաջանա խոտհնձի, խոտի չորացման, փոխադրման ու դիզելու աշխատանքների միջև։ Այդ գործին մեծ չափով կարող է օգնել առաջավոր բրիգադաների և օղակների անցյալ տարվա աշխատանքի հարուստ փորձը։ Հարկավոր է միայն այդ փորձը մասսայականաց-

նել, հասցնել այն խոտհնձի ֆրոնտում աշխատող յուրաքանչյուր կոլխոզնիկի, նրանց օրինակով պայքար ծավալել պլանների գերակատարման, աշխատանքի արտադրողականության բարձրացման համար։ Արտադրողականության բարձրացմանը մեծ չափով նպաստում է նաև անհատական գործարքի կիրառումը։ Անհատական գործարքը միաժամանակ հնարավորություն է տալիս հետևել խոտհնձի որակին, կատարել աշխատանքի ճիշտ հաշվառում և որ ամենակարևորն է, մեծ թափ հաղորդել սոցիալիստական մրցությանը։

Խոտի առավելագույն պաշարներ կուտակելու համար, հարկավոր է ստուգել, ուսումնասիրել այն բոլոր աղբյուրները, որտեղից կարելի է կեր հայթայթել, իսկ այդպիսի աղբյուրներ շատ կան։ Խոտհունձ պետք է կատարել այն բոլոր վայրերում, այգիներում, անտառների բացատներում, միջնակներում, ճանապարհների եզրերին, որտեղ հնարավոր է այդ։

Անցյալ տարի Սիսիանի, Մարտունու, Բայազետի շրջանների մի շարք առաջավոր կոլխոզներ ջրովի ու ցածրադիր խոնավ բնական խոտհարքներում կատարեցին երկրորդ հունձ։



Անհրաժեշտ է այդ պրակտիկան լայն կերպով կիրառել նաև այս տարի։

Լենինյան մի շարք շրջանների կոլխոզներ ձմեռը հանրային հոտը փոխադրում են ձմեռային արոտավայրերը։ Հաճախ ձմեռանոցներում անհրաժեշտ քանակությամբ անասնակեր չլինելու պատճառով, տեղի է ունենում անասունների մեծ կորուստ։ Դրանից խուսափելու համար անհրաժեշտ է ձմեռանոցներում կատարել խոտհունձ և ստեղծել կոշտ անասնակերի ապահովագրական ֆոնդ՝ յուրաքանչյուր գլուխ ոչխարի համար մեկ ցենտների չափով։ Ձմեռանոցներում կատարվող խոտհնձից բացի, կազմակերպել նաև խոտի փոխադրումը այդ ձմեռանոցները, ապահովել նրա ճիշտ դիզումն ու պահպանումը։ Փոխադրած խոտը կշռելուց կամ չափելուց հետո, հատուկ ակտով հանձնել ֆերմայի վարիչին կամ պահեստապետին։

Անասունների ձմեռումը հաջող կազմակերպելու գործում մեծ նշանակություն ունի նաև սիլոսի պատրաստումը։ Սիլոսն արժեքավոր կեր է։ Լավ պատրաստելու դեպքում, նրա մեջ լրիվ պահպանվում է կանաչ մասսայի սնընդավոր հատկությունը, որը շատ կարևոր է կաթնատու կովերի և մանավանդ՝ մատղաշ անասունների համար։

Մեր Ռեսպուբլիկայի կոլխոզներն այս տարի պետական պլանի համաձայն, պատրաստելու են 150 հազար տոննա սիլոս և կուտակելու են 50 հազար տոննա կերի արմատապտուղներ (կերի ճակնդեղ, կարտոֆիլ և այլն)։

Պետական այս առաջադրանքը կատարելու համար, անհրաժեշտ է նախ և առաջ կառուցել պլանով նախատեսված սիլոսային աշտարակները և վերապատրաստել ու կարգավորել սիլոսային փոսերն ու տրանշեյները, վերանորոգել կոլխոզներում ու ՄՏ կայաններում եղած սիլոսահատ մեքենաները։

Ցածրադիր շրջաններում, սիլոսի աշխատանքը պետք է սկսել վաղ գարնանը։ Սիլոսի համար որպես հումք օգտագործել մոլախոտերը, վայրի փարթամ բուսականությունը, բանջարա-բոստանային կուլտուրաների մնացորդները։

Սիլոսային կուլտուրաների ու կերի արմատապտուղների (կերի ճակնդեղ, կարտոֆիլ և այլն) ցանքի պլանները կատարելուց բացի, պետք է կազմակերպել նաև նրանց ամառային մշակությունը՝ քաղհանը և փխրեցումը, ոչ պակաս 2—3 անգամ։ Անհրաժեշտ է ամբողջ աշխատանքը կատարել խնամքով, մըտածված, օրացուցային պլանով, լրիվ կեր-



պով ծանրաբեռնել բոլոր սիլոսահատ մեքենաները, նախօրոք յուրաքանչյուր մեքենայի համար մշակել արտադրական պլան և աշխատանքային մարշրուտ։ Այդ միջոցառումները հնարավորություն կտան ժամանակին կատարել սիլոսի պատրաստման առաջադրանքները։

ՍՍՌՄ Մինիստրների Սովետը և ՀամԿ(բ)Պ Կենտկոմը 1946 թվականի հունիսի 17-ի որոշումով սահմանել են խրախուսանքի միջոցներ՝ անասնակերի մթերումով զբաղվող կոլխոզնիկների համար։ Այդ որոշման համաձայն, այն կոլխոզնիկները, որոնք գերակատարում են խոտհնձի ու սիլոսացման առաջադրանքները, հիմնական աշխօրերով վարձատրվելուց բացի, ստանում են հնձված և կուտակված խոտի 10-րդ մասը։ Կոլխոզնիկների լրացուցիչ վարձատրությունը կատարվում է խոտհնձի աշխատանքներն ավարտելուց հետո, խոտի ընդունման և դիզման զուգընթաց, բայց ոչ ուշ քան սեպտեմբերի 1-ը։ Խոտի բաշխումը բրիգադայի, օղակի կոլխոզնիկների միջև կատարվում է խոտհնձի ժամանակ վաստակած աշխօրերի համապատասխան։ Ձիու խոտհար մեքենայի վրա աշխատող կոլխոզնիկը 40 հեկտարից

*ավելի հնձված յուրաքանչյուր հեկտարի համար ստանում է 20 կգ. խոտ։*

*Լրացուցիչ վարձատրության ճիշտ կիրառումը կնպաստի աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, կապահովի անասնակերի մթերումների կատարումը լավագույն ժամկետներում։*

*Ծավալել սոցիալիստական մրցությունը խոտհնձի ժամանակ, մասսայականացնել մրցության արդյունքները, առաջավոր հրնձվորների, մեքենավարների լավագույն փորձը, օգնել ետ մնացողներին՝ առաջավորներին հասնելու համար, բացատրել խոտհնձի նորմաների գերակատարման համար տրվող լրացուցիչ վարձատրման կարգը, հասնել բարձր արտադրողականության բոլոր կոլխոզնիկների կողմից—այսպիսի խնդիրներ են դրված ագիտատորների առջև խոտհնձի ընթացքում։ Ագիտատորները կոլխոզնիկներին լայն կերպով պետք է պարզաբանեն ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1948 թվականի ապրիլի 24-ի Հրամանագիրը՝ «Ցորենի, տարեկանի, եգիպտացորենի, բրնձի, բամբակի, շաքարի ճակնդեղի, արևածաղկի, երեքնուկի, առվույտի և տիմոթեևկայի բարձր բերք ստանալու համար կոլխոզնիկներին,*



*ՄՏ կայանների ու սովխոզների աշխատողներին Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում շնորհելու և ՍՍՌՄ շքանշաններով ու մեդալներով պարգևատրելու մասին»։ Այդ Հրամանագիրը բացառիկ կարևորություն ունեցող մի փաստաթուղթ է, որը փայլուն հեռանկարներ է բաց անում սոցիալիստական գյուղատնտեսության հետագա, էլ ավելի բուռն ծաղկման, ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Փետրվարյան պլենումի որոշումը մինչև վերջը կենսագործելու համար։*

Ա. ԴԱՎԹՅԱՆ

(Հայկ. ՍՍՌ Գյուղատնտեսության Մինիստրության Կերերի և Արոտների բաժնի պետ)

# ՑԱՆՔԵՐԻ ԽՆԱՄՔԸ ԿԱՐԵՎՈՐ ՕՂԱԿ Է ԲԱՐՁՐ ԲԵՐՔԻ ՀԱՄԱՐ ՄՂՎՈՂ ՊԱՅՔԱՐՈՒՄ

(Ագրոնոմի խորհուրդները)

Մեր Ռեսպուբլիկայի կոլխոզները գտնվում են գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման համար մղվող պայքարի ամենապատասխանատու և ամենալարված շրջանում: Այս տարվա գարնան ուշ սկսվելը և դրան հաջորդող անբարենպաստ եղանակները ոտքի են հանել գյուղատնտեսության բոլոր աշխատողներին՝ գարնանացանը սեղմ ժամկետում ավարտելու և գարնանային բոլոր աշխատանքներն արագ ու բարձրորակ կատարելու համար: Ներկայիս յուրաքանչյուր օրը, յուրաքանչյուր ժամը վճռում է գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության հարցը: Ամեն մի հապաղում, ամեն մի ժամվա կորուստ բացասաբար է անդրադառնում բերքատվության վրա: Չի կարելի բարձր



բերք ստանալ, եթե անգամ դաշտի նախացանքային մշակությունը և ցանքը տարվել են ագրոտեխնիկական պահանջների համաձայն, սակայն նրա հետագա խնամքը, պայքարը մոլախոտերի, վնասատուների, հիվանդությունների և խոնավության կորստի դեմ տարվում է անբավարար: Նոր-Բայազետի, Սիսիանի, Թալինի, Ախտայի և մի շարք այլ շրջանների բարձր բերքի առաջավոր կոլխոզներ գործնականում ապացուցեցին, որ ցանքի խնամքը բարձր բերքի ամենահուսալի գրավականն է:

Ցանքի խնամքի հիմնական միջոցառումներից մեկն է համարվում պայքարը մոլախոտերի դեմ: Հայտնի է, որ շատ մոլախոտեր իրենց բիոլոգիական առանձնահատկությունների շնորհիվ ընդունակ են ավելի արագ աճելու և տալու ուժեղ արմատային սիստեմ, ավելի շատ ջուր գոլորշիացնելու, քան հացահատիկային և մնացած գյուղատնտեսական կուլտուրաները: Պարզված է նաև, որ մոլախոտերը արագ կլանում են խոնավությունը և չորացնում ոչ միայն հողի վերին շերտերը, այլ նաև հողի ենթաշերտերն ու այդպիսով կուլտուրական բույսերին զրկում ինչպես խոնավությունից, այնպես էլ սննդանյութերի

պաշարից։ Դրա համար էլ անխնա պայքարը մոլախոտերի դեմ համարվում է գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման հիմնական գործոններից մեկը։

Մոլախոտերի դեմ ծավալվող պայքարի հիմնական միջոցը առայժմ համարվում է քաղհանը, որը պետք է կատարել որքան կարելի է վաղ, մոլախոտերի մասսայական ծլման հենց առաջին օրերին և որակով։ Հացահատիկային կուլտուրաների ցանքի մեջ եղած մոլախոտերի քաղհանը կատարվում է ձեռքով։ Քաղհանած մոլախոտերը ոչ մի դեպքում չի կարելի թողնել դաշտում, որովհետև խոնավ հողի վրա ընկած մոլախոտերի որոշ տեսակներ, օրինակ՝ խատուտիկը (օդուվանչիկ), փուշը (օսոտ) և այլն, ընդունակություն ունեն նորից արմատակալել, նույնիսկ ծաղկել ու հասունանալ։

Դաշտերում լինում են նաև այնպիսի մոլախոտեր, որոնք շնորհիվ իրենց խոր գրնացող արմատների. դժվար են պոկվում, օրինակ՝ իշառվույտը, փուշը և այլն։ Նման դեպքերում քաղհանը պետք է կատարել քաղհան գործիքներով, որոնց օգնությամբ մոլախոտերը կարելի կլինի կտրել խոր ար-



մատից։ Բոլոր տեսակի մոլախոտերը քաղհանից հետո պետք է հեռացնել դաշտից, տալ անասուններին, կամ օգտագործել սիլոսի համար։

Խոնավ տարիներին մոլախոտերը զարգանում են ավելի ինտենսիվ և փարթամ, ուստի դրան համապատասխան էլ հարկավոր է ուժեղացնել նաև քաղհանի աշխատանքները։ Սերմաբուծական կոլխոզներում և սերմադաշտերում հատուկ ուշադրություն պետք է դարձնել քաղհանի աշխատանքների վրա։ Այդ դեպքում պետք է հեռացնել ոչ միայն մոլախոտերը, այլև ցանքի մեջ նկատված այլ կուլտուրական . բույսերը և սորտերի խառնուրդը։ Բարձր բերքի վարպետները հացահատիկի ցանքը քաղհանում են 2-4 անգամ, սկսած ցանքերի ծիլերը երևալուց մինչև նրանց խողովակակալումը, բացի այդ, քաղհանում են նաև դաշտի միջնակները, ճանապարհների, առուների եզրերը և բացատները, որոնք համարվում են մոլախոտերի զարգացման ու տարածման օջախներ։

Հացահատիկային կուլտուրաների խնամքի կարևոր միջոցառումներից մեկն է համարվում նաև սնուցումը։ Փորձը ցույց է տվել, որ ժամանակին ու որակով կատար-

ված սնուցումը հացահատիկի բերքատվու-
թյունը բարձրացնում է 3—4 ցենտներով։
Սնուցումը պետք է տալ վաղ ժամանակում,
այսինքն գարնանը, ծիլերը երևալուց հետո՝
թփակալման ժամանակաշրջանում։

Բարձր բերքի առաջավորները սնուցու-
մը տալիս են երկու անգամ՝ վաղ գարնանն
ու ցողունակալման ժամանակ, լուծույթի
կարգով։ Սնուցման համար կարելի է օգ-
տագործել ինչպես տեղական, այնպես էլ
հանքային պարարտանյութերը։ Գոմաղբի
լուծույթը պատրաստվում է փոսերում կամ
տակառներում, մեկ մաս գոմաղբին տալով
6—7 մաս ջուր։ Ստացված լուծույթը փոխա-
դրում են դաշտ և հավասարաչափ շաղ
տալիս ցանքի վրա։ Թռչնաղբի լուծույթը
պատրաստվում է նույն կարգով, միայն
մեկ մաս թռչնաղբին խառնում են 25 մաս
ջուր։ Հացահատիկային կուլտուրաների
ցանքերի սնուցման համար, նայած հողա-
յին պայմաններին, յուրաքանչյուր հեկտա-
րին միջին հաշվով կարելի է օգտագործել՝
գոմաղբ 5—6 տոննա, թռչնաղբ 4—6 ցենտ-
ներ, մզվածք՝ (ժիժա) մեկ ու կես տոննա,
հանքային պարարտանյութերից՝ սուպերֆոս-
ֆատ 2—3 ցենտներ, ամմոնիում-սուլֆատ



1,5 ցենտներ, 40 տոկոսանոց կալիական աղ
0,7-ից մինչև մեկ ցենտներ։

Բոլոր հանքային պարարտանյութերը
նախքան օգտագործելը, պետք է լավ ման-
րացնել, սնուցելուց հետո անպայման փոց-
խել։

Այս տարվա խոնավ եղանակների հե-
տևանքով, մեր լեռնային և խոնավ տա-
փաստանային շրջանների հացահատիկային
կուլտուրաների ցանքերի դաշտերում անձ-
րևի ջրերը լճանալով, հացահատիկի բույսին
զրկում են օդից ու ոչնչացնում այն։ Ցանքը
նման վտանգից փրկելու համար անհրա-
ժեշտ է գութանով կամ ձեռքով անցկացնել
առուներ և դաշտը ցամաքեցնել ավելորդ
ջրերից։

Վերջին մի քանի տարում մեր Ռես-
պուբլիկայում լայն ծավալ է ստացել ե-
գիպտացորենի ցանքը։ Այդ կուլտուրայի
բարձր բերքի ապահովման կարևոր միջո-
ցառումներից մեկը ժամանակին և որակով
կատարված նոսրացումն է։ Եգիպտացորենի
խիտ ծլած բույսերն իրար ճնշում են, նե-
ղում և աճում աննորմալ։ Ուստի բույսի նոր-
մալ զարգացումն ապահովելու համար, ան-
հրաժեշտ է ցանքը նոսրացնել։

Նոսրացումը կատարվում է երկու անգամ.

առաջին՝ երբ բույսի բարձրությունը հասնում է 5—8 սմ., իսկ երկրորդ նոսրացումը՝ երբ բույսի վրա երևում են 7—8 տերևներ և բույսի բարձրությունը հասնում է մոտ 20—30 սմ.-ի։ Առաջին նոսրացման ժամանակ շարքի յուրաքանչյուր բնում պիտի թողնել երկուական բույս— մեկը մյուսից 2—4 սմ. հեռավորությամբ. իսկ միջբնային տարածությունը՝ մոտ 20 սմ. նայած հողի բերրիության և ջրով ապահովվածության աստիճանին։ Երկրորդ նոսրացման ժամանակ յուրաքանչյուր բնում թողնել մեկ բույս։ Նոսրացման ընթացքում անհրաժեշտ է բներից հեռացնել թույլ զարգացած, վնասված բույսերը, թողնելով ամենաառողջները։ Նոսրացումը պատասխանատու գործ է, այն պետք է հանձնարարել օղակի բարեխիղճ, փորձված անդամներին։

Եգիպտացորենի զարգացման համար բացառիկ նշանակություն ունի ցանքադաշտի փխրեցումը։

Փխրեցումն անհրաժեշտ է կատարել բույսի ծլման ժամանակից սկսած, երբ նկատվում է դաշտի կեղեվակալում կամ մոլախոտերի աճ։ Փխրեցման ժամանակ պետք է միաժամանակ քաղհանել։ Դաշտի փխրեցման համար հարկավոր է օգտագործել տրակտորային



և ձիու կուլտիվատորներ, իսկ միջբույսային տարածությունների և շարքի եզրերի համար՝ ձեռքի գործիքներ։ Կուլտիվացիան մեծ արդյունք է տալիս այն ժամանակ, երբ կուլտիվատորն ընդգրկում է միջշարքային մոտ 40—45 սմ. տարածություն և հողը փխրեցնում է մոտ 10 սմ. խորությամբ։

Եգիպտացորենի քաղհանը և փխրեցումը պետք է կրկնել այնքան անգամ, ինչքան ցանքերի վրա կերևան մոլախոտերի ծիլեր, իսկ դաշտի վրա՝ կեղևակալում. այդ գործողություններն անհրաժեշտ է կատարել յուրաքանչյուր ոռոգումից հետո՝ հողի քեշին։

Եգիպտացորենի բերքատվության բարձրացման գործում մեծ նշանակություն ունի ցանքի սնուցումը։ Սնուցման ժամանակ պետք է պարարտանյութը կուլտիվատորի միջոցով լավ խառնել հողի հետ, իսկ անհրաժեշտության դեպքում նաև ջրել։

Եգիպտացորենի պլանտացիայի ոռոգման ժամանակը որոշվում է՝ ելնելով ցանքի վիճակից, հողի ջրաթափանցականությունից, տեղումների չափից և հողի բերրիության աստիճանից ու զոնայականությունից։ Հետևել, որ եգիպտացորենի բույսը ամբողջ վեգետացիայի շրջանում ապահովված լինի անհրաժեշտ խոնավությամբ։ Թեթև ավազային հո-

ղերը ջրել հաճախակի, իսկ խոնավություն պահանջող հողը անգամ կարիք չի լինում ջրելու։ Եգիպտացորենի դաշտը հավասարաչափ խոնավացնելու, ջուրը ռացիոնալ կերպով օգտագործելու, կեղևակալումը կանխելու ամենաարդյունավետ եղանակը համարվում է ակոսաջրման եղանակը։ Բրիգադիրները և օղակավարները պետք է հետևեն ակոսների անցկացմանն ու ջրելու որակին. ակոսները բացել ջրելուց մեկ—երկու օր առաջ 15—20 սմ. խորությամբ ու հետո բաց թողնել ջրի շիթը։ Երբեք թույլ չտալ դաշտի գերխոնավացում կամ ավելորդ ջրի հոսումը պլանտացիայի մեջ, որովհետև դրանով եգիպտացորենի ցանքին մեծ վնաս է հասցվում և անտեղի կորչում ջրի զգալի պաշար։

Մեծ անելիքներ ունեն ագիտատորները ցանքերի մշակման աշխատանքներն օրինակելիորեն կազմակերպելու գործում։ Նրանց հիմնական խնդիրն է լայն բացատրական աշխատանք ծավալել կոլխոզնիկների մեջ, մասսայականացնել առաջավորների հարուստ փորձը, պարզաբանել աշխատանքի լավագույն ձևերի արմատավորման անհրաժեշտությունը, հետևել ագրոկանոնների



ճիշտ կիրառմանը և սոցիալիստական մրցության ծավալման միջոցով բարձրացնել կոլխոզնիկների աշխատանքային խանդավառությունը։ Ագիտացիոն ամբողջ աշխատանքը պետք է հետապնդի մի նպատակ՝ օգնել կոլխոզվարչություններին ու տեղական կազմակերպություններին՝ մոբիլիզացնելու կոլխոզային ողջ ուժերը՝ գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների մշակումը ժամանակին ու որակով կատարելու համար և դրանով իսկ հասնել բերքատվության բարձրացմանը։

Ագրոնոմ՝ Ա. ՔՈՉԱՐՅԱՆ

# ԻՆՉՊԵ՞Ս ԵՆՔ ՄԵՆՔ ՄՐՑՈՒՄ ՄԱՏՐՈՍՈՎԻ ՀԵՏ

*Մոսկվայի «Փարիզյան Կոմունա» կոշկեղենի ֆաբրիկայի ձևող բրիգադայի բրիգադիր-ստախանովական Վասիլի Մատրոսովը հանդիսացավ հայրենասիրական մեծ շարժման նախաձեռնող։ Նա ցույց տվեց նոր միջոցներ աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրանքի բարձր տեմպերի նվաճման, հումքի խնայողության համար։*

*Անվանի ստախանովականի հայրենասիրական նախաձեռնությունը լայն արձագանք գտավ արդյունաբերության ամենատարբեր բնագավառների ֆաբրիկաներում, գործարաններում։ Մեր ֆաբրիկայի կոլեկտիվն իր արտադրական խորհրդակցությունում քննության առնելով Մատրոսովի ռացիոնալիզատորական առաջարկները, նշեց նրա մեթոդների կիրառման և արմատավորման*



*անհրաժեշտությունը և լրջորեն վերակառուցեց իր աշխատանքները։ Հաշվի առնելով բոլոր հնարավորություններն ու միջոցները, մեր բրիգադան որոշում ընդունեց սոցիալիստական մրցության մեջ մտնել Մատրոսովի ձևող բրիգադայի հետ։ Բրիգադան որոշեց աշխատանքի արտադրողականության բարձրացման, աշխատանքի տեմպերի արագացման հետ միասին, տնտեսել ավելի շատ հումք, քան պարտավորվել էր անվանի բրիգադիրը։ Դա մի շատ համարձակ ու պատվավոր որոշում էր, որի մեծությունը զգում էին բրիգադայի բոլոր անդամները։ Մատրոսովի ստանձնած 4 տոկոսի փոխարեն մենք պարտավորվեցինք փափուկ կաշվի գծով խնայողություն կատարել 5 տոկոսի, իսկ կտավինը՝ 4 տոկոսի չափով։*

*Մեծ պայքար ծավալվեց մրցությունից պատվով դուրս գալու համար։ Համառ պայքարը տվեց իր հիանալի արդյունքները։*

*Մրցության առաջին ամսվա արդյունքների ամփոփումը ցույց տվեց, որ բրիգադան փայլուն կերպով է կատարել իր ստանձնած պարտավորությունները—փափուկ կաշվի խնայողությունը հասցրել է 5 տոկոսի։ Ես*

անձամբ տեսնել էի կաշվի 6 և կտավի 7 տոկոսը:

Ինչպե՞ս մենք ձեռք բերինք այդ հաջողությունները:

Նախքան մրցության մեջ մտնելը, ես շատ ժամանակ էի կորցնում մեր բրիգադայի օրվա առաջադրանքներն ստանալու համար, իսկ բրիգադայի անդամները մինչև առաջադրանքներ ստանալը զբաղվում էին երկրորդական գործերով, որոնք ոչնչով չէին նպաստում աշխատանքի արտադրողականության բարձրացմանը: Մենք որոշեցինք վերացնել այդ վնասակար պրակտիկան և հաջորդ օրվա առաջադրանքներն ստանալ ամեն օր աշխատանքից հետո, նախօրոք նախապատրաստել աշխատանքի տեղը, սրել դանակները, խնամքով պատրաստել ձևի տախտակները: Այս միջոցառումները մեծ չափով օգնեցին մեզ կատարելու ստանձնած պարտավորությունները:

Այդ բոլորից հետո մենք պետք է ձգտեինք կատարել հումքի խնայողություն: Անհրաժեշտ էր խստապահանջ և բարեխիղճ վերաբերմունք ցուցաբերել կաշվի յուրաքանչյուր կտորի հանդեպ: Յուրաքանչյուր դեցիմետր



չօգտագործված կաշվի կտոր մի քանի ռուբլու կորուստ էր նշանակում:

Խնայողություն կատարելու համար, մենք ամենից առաջ կատարելագործեցինք ձևման պրոցեսը: Նախկին մոդելները, որոնցով ձևում էինք, ավելի մեծ ծավալ ունեին, քան պահանջվում էր տվյալ կոշիկի համար: Պատրաստեցինք նոր մոդելներ: Դա հնարավորություն տվեց մեզ ամսական տնտեսել 4000—5000 դեցիմետր փափուկ կաշի, որից կարելի է պատրաստել 300—350 զույգ կոշիկ. կտավի խնայողությունը հասցրինք 7 տոկոսի: Կտրելու աշխատանքներն արագացնելու համար մոդելների եզրերը մետաղապատեցինք:

Այս միջոցառումների կիրառումը հնարավորություն տվեց արդյունավետ կերպով օգտագործել ութժամյա աշխատանքային օրը, անտեղի չկորցնել ոչ մի րոպե. մինչդեռ նախքան այդ, միայն օժանդակ օպերացիաներն ամեն օր ինձնից խլում էին 2—3 ժամ:

Մինչև Մատրոսովի հետ սոցիալիստական մրցության մեջ մտնելը, բրիգադայի ոչ բոլոր անդամներն էին աշխատում ստախանովաբար, ձևող 11 բանվորներից միայն 5—6 հոգին էին գերակատարում իրենց պլան-

ները, անհրաժեշտ միջոցներ չէին ստեղծվել առաջավորների փորձն արմատավորելու համար։ Մրցության ընթացքում յուրացնելով ռացիոնալիզատորական մի շարք պրոցեսներ, նրանք բոլորն էլ բարձրացրին իրենց աշխատանքի արտադրողականությունը։ Այժմ մեր բրիգադայում չկան ոչ ետ մնացողներ և ոչ էլ «միջակներ», նրանք բոլորն էլ կատարում են 2—3 նորմա։ Օրինակ, ձևող բանվորուհի Իրինա Բոյգովան վերակառուցելով իր աշխատանքները, հաճախ ետ չի մնում ինձնից և իր պլանները կատարում է 200—250 տոկոսով։

Առաջին հաջողությունները մեծ լիցք հաղորդեցին մեզ՝ մեր հետագա աշխատանքում։ Մատրոսովի հետ մեր մրցությունը տվեց նորանոր արդյունքներ։ 1947 թվականի պլանը, որ բրիգադան պարտավորվել էր կատարել Հոկտեմբերյան Սոցիալիստական Ռևոլյուցիայի երեսնամյակի օրը, կատարեց նույն թվի՝ հուլիսի 20-ին։ 1947 թ. օգոստոսի 25-ին ես կատարեցի 1948 թվականի պլանը, իսկ 1948 թվականի մայիսի 15-ին՝ 1949 թվականի արտադրական պլանը և այժմ աշխատում եմ 1950 թ. հաշվին։ Ձեռք բերած այդ հաջողությունների շնորհիվ, ես



արժանացա Հայկական ՍՍՌ Թեթև Արդյունաբերության Մինիստրության Պատվոգրին, իսկ ֆաբրիկայի դիրեկցիան ինձ պարգևատրեց 1500 ռուբլի դրամով։

Մատրոսովի հետ մեր մրցությունն առաջ բերեց մեծ շարժում նաև ֆաբրիկայի մյուս բրիգադաների մեջ։ Օգնել նրանց հասնելու աշխատանքի արտադրողականության այն մակարդակին, որ ձեռք էինք բերել մենք, հանդիսանում է մեր հիմնական խնդիրներից մեկը։ Ստեղծել ընդհանուր վերելք ամբողջ ֆաբրիկայում — այս է մեր նպատակը։ Դրան հասնելու համար, մենք կազմակերպեցինք տեխմինիմումի խմբակ, որտեղ առաջավորների հարուստ փորձը մասսայականացնելու հետ միասին, ցույց ենք տալիս այն միջոցներն ու ուղիները, որոնք տանում են դեպի աշխատանքի արտադրողականության բարձրացում, արտադրանքի որակի բարելավում և խնայողության խիստ ռեժիմի կիրառում։

Այս միջոցառումների շնորհիվ մրցության տեմպերը դարձան ավելի ծավալուն, ավելի եռուն։ Այժմ մեր ֆաբրիկայում չկա մեկը, որ չունենա իր մրցակիցը։ Հանձին կարի բրիգադայի (բրիգադիր Անդին Պետրոսյան)

մենք ունենք լուրջ մրցակից, որը գրեթե հավասարվում է մեզ։

Սակայն ձեռք բերած նվաճումները մեզ չեն հանգստացնում։ Կարելի է և պետք է հասնել ավելի բարձր ցուցանիշների։ Ես անձամբ ձգտում եմ ավելի խորանալ իմ գիտելիքների մեջ, լարել իմ ուժերը և Հոկտեմբերյան Սոցիալիստական Ռևոլյուցիայի 31-րդ տարեդարձի օրը՝ նոյեմբերի 7-ին կատարել իմ հնգամյա պլանը։

ՄԱՐԻԱ ԹՈՒՄԱՆՅԱՆ
(Երևանի Կոշիկի 3-րդ ֆաբրիկայի ձևող բրիգադայի բրիգադիր)



# ԻՐԱԴԱՐՁՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՊԱՂԵՍՏԻՆՈՒՄ

Առաջին համաշխարհային պատերազմի տարիներին Պաղեստինը օկուպացվեց անգլիացիների կողմից։ 1922 թվականի հունիսի 24-ին Ազգերի լիգան հաստատեց անգլիացիների մանդատն այդ երկրի վրա։

1948 թվականի մայիսի 14-ին լրացավ Պաղեստինի նկատմամբ անգլիացիների մանդատի ժամկետը։

Անգլիացիների 26 տարվա տիրապետությունն այդ հնագույն երկրին և ժողովուրդներին բերեց քայքայում, ավերածություններ, մասսայական սպանություններ և վերջապես —պատերազմ։

Ջգտելով մի կերպ դուրս գալ դրությունից, մի շարք անգլիական թերթեր փորձում էին գովաբանել այն «բարիքը», որ շնորհել է Անգլիան Պաղեստինին։ Իսկ պրեմյեր-մինիստր Էտտլին ուղղակի հայտարարեց, որ պատմությունը միայն կարող է շնորհակա-

չությունն հայտնել Անգլիային այն բոլորի համար, որ նա արել է Պաղեստինի նկատմամբ։

Սակայն այլ կերպ են գնահատում անգլիական «բարերարությունը» Պաղեստինում՝ նրա բուն բնակիչները։ Այսպես, արաբական «Էլ-Ֆաջխա» թերթը անգլիացիների հեռանալու կապակցությամբ գրում է՝ «...պատմությունը չի գովաբանի նրանց, այլ, ընդհակառակը, կնշավակի նրանց, Պաղեստինում կատարած բոլոր չարագործությունների համար։ Մենք, արաբներս, ուրախությամբ ենք հրաժեշտ տալիս 30-ամյա ճնշումին, որը սահմանվել էր ավինների ուժով և անարդարացի օրենքներով։ Մենք ուրախությամբ հրաժեշտ ենք տալիս անգլիական ինկվիզիցիայի սև էպոխային»։

Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո Պաղեստինի հրեաները անգլիական ադմինիստրացիայի դեմ մղած իրենց պայքարով նույնպես արժանի գնահատական տվին Անգլիայի վարած քաղաքականությանն այդ հնագույն երկրում։

***

Պաղեստինը գտնվում է Միջերկրական ծովի հարավ-արևելյան ափին։ Նրա տերիտո-



րիան գրավում է 26,3 հազար քառակուսի կիլոմետր տարածություն, բստ որում մշակելի հողերի տարածությունը կազմում է միայն 8 հազար քառակուսի կիլոմետր։ Ջրի պակասության պատճառով հսկայական տարածություններ ամայի են։

Պաղեստինի բնակչությունը հաշվվում է 1.845 հազար մարդ, որոնցից 1.237 հազարը արաբներ են, իսկ 608 հազարը՝ հրեաներ։ Բնակչության 67 տոկոսը զբաղվում է գյուղատնտեսությամբ։ Մշակության համար պիտանի հողերից 450 հազար հեկտարը պատկանում է արաբական խոշոր հողատերերին և 200 հազար հեկտար՝ հրեաներին։ Հողազուրկ արաբ գյուղացիների՝ ֆելլահների հսկայական մասսան կալվածատերերից ստրկացուցիչ պայմաններով վարձակալում է հողի չնչին կտորներ և կամ մի քանի գրոշի համար աշխատում հրեական կամ արաբական կապիտալիստների պլանտացիաներում։ Գյուղատնտեսության ապրանքային արտադրանքը անչափ ցածր է (20—25 տոկոս), որի հետևանքով էլ Պաղեստինի նման գյուղատնտեսական երկիրը ամեն տարի արտասահմանից ներմուծում է սպառվող հացահատիկի 50 տոկոսը։ Գյուղատնտեսության մեջ մեծ տեղ է գրավում ցիտրուսային կուլ-

տուրան, որը կազմում է գյուղատնտեսու-
թյան համախառն արտադրանքի մոտ կեսը։
Հրեական և արաբական պլանտացիաներից
ստացած ցիտրուսների արտահանումը 1945
—1946 թվականին կազմում էր ավելի քան 5
միլիոն արկղ— 3,5 միլիոն ֆունտ ստեռլինգի
արժողությամբ։

Հրեական շրջանների գյուղատնտեսությու-
նը, ինչպես նաև հրեական արդյունաբերու-
թյունը, մեծ կախման մեջ է ամերիկյան կա-
պիտալից։ Հրեական արդյունաբերության
(տեքստիլ ֆաբրիկաներ, քիմիական գործա-
րաններ, մետաղամշակման գործարաններ)
գլխավոր ձեռնարկությունները կենտրոնաց-
ված են Տել-Ավիվում, Երուսաղեմում, Հայ-
ֆայում և մյուս խոշոր կենտրոններում։ Եր-
կրորդ համաշխարհային պատերազմի տարի-
ներին մեծ չափով զարգացավ ալմաստամշակ-
ման արդյունաբերությունը, որն աշխատում
է հարավ-աֆրիկյան հումքի վրա, գլխավո-
րապես ամերիկյան շուկայի համար։ 1946
թվականին արտահանվել է 5,5 միլիոն ֆունտ
ստեռլինգի ալմաստ։

Անգլիական և ամերիկյան մոնոպոլիստա-
կան կապիտալը գործում է հզոր բանկերի
և տրեստների միջոցով։ Միայն 2 կոնցերն՝
Պաղեստինի Պոտաշ ընկերությունը և Պաղես-



տինի էլեկտրիկ կորպորացիան տիրում են Պա-
ղեստինի արդյունաբերության ներդրումների
40 տոկոսին։

Պաղեստինում լայն գործողություններ են
ծավալել անգլո-ամերիկյան նավթային
տրեստները։ Հեռավոր Կիրկուկայից, կտրե-
լով արաբական պետությունների սահմաննե-
րը, դեպի Հայֆա է ձգվում անգլիական նավ-
թամուղը, որը տարեկան 4 միլիոն տոննա
նավթ է տեղափոխում։

Անգլո-ամերիկյան նավթային մոնոպո-
լիստները պատրաստվում են Բասրայից Հայ-
ֆա անցկացնել երկրորդ նավթամուղը։ «Արա-
բիեն Ամերիկեն օյլ կոմպանիա»-ն ևս ծրա-
գրում է Սաուդյան Արաբիայից նավթի տե-
ղափոխումը Հայֆա։

Հայֆան միաժամանակ անգլիական իմպե-
րիալիզմի ստրատեգիական բազան է Միջեր-
կրական ծովի արևելյան մասում։ Դրանով ևս
պիտի բացատրել այն մեծ շահագրգռվածու-
թյունը, որ հանդես են բերում անգլիական
իմպերիալիստները Պաղեստինի նկատմամբ
—դուրս գալով մի դռնից, փորձում են մյուս
դռնով նորից ներս մտնել իրենց բույնը։

Պաղեստինի նկատմամբ իրենց շահագրգ-
գռվածությունը չեն թաքցնում նաև ամերիկ-
յան իմպերիալիստները։ Օգտվելով անգլիա-

ցիների դիրքի ընդհանուր թուլացումից, ամերիկացիներն ուզում են, եթե ոչ փոխարինել անգլիացիներին Պաղեստինում, ապա, համենայնդեպս, նրանց հարկադրել տեղ բաց անել իրենց համար։ Այստեղ ևս վերջին տեղը չեն բռնում Միացյալ Նահանգների ինչպես նավթային, այնպես էլ ստրատեգիական շահերը։

***

1947 թվականի նոյեմբերի 29-ին Միավորված Ազգերի Կազմակերպությունը ձայների մեծամասնությամբ որոշում ընդունեց Պաղեստինը բաժանել երկու անկախ պետության՝ հրեական և արաբական։ Ըստ այդ որոշման, արաբական ապագա պետության տերիտորիան սահմանվում է 11,1 հազար քառակուսի կիլոմետր, ազգաբնակչությունը՝ 725 հազար արաբներ և 10 հազար հրեաներ։ Հրեական պետության տերիտորիան 14,1 հազար քառակուսի կիլոմետր, ազգաբնակչությունը՝ 498 հազար հրեաներ և 407 հազար արաբներ։

Երուսաղեմի շրջանը, ուր ապրում են 105 հազար արաբներ և 100 հազար հրեաներ, առանձնացվում է որպես ինքնուրույն ադմինիստրատիվ միավոր, հատուկ միջազգային ռեժիմով։ Յուրաքանչյուր պետություն կազմ-



վում է երեք տերիտորիալ ռայոններից, որոնք միմյանց հետ կապվում են նեղ միջանցքներով։

Նման որոշումը համապատասխանում էր ինչպես Պաղեստինի հրեական, այնպես էլ արաբական բնակչության շահերին, և նախադրյալներ էր ստեղծում հրեաների ու արաբների խաղաղ համակեցության և համագործակցության համար։ Սակայն իրերի հետագա զարգացումը այլ դրություն ստեղծեց։ Մայիսի 14-ին, Պաղեստինի նկատմամբ անգլիական մանդատի ժամկետն ավարտվելու կապակցությամբ, Պաղեստինի հրեաները ՄԱԿ-ի որոշման հիման վրա հռչակեցին Իսրայելի հրեական պետությունը։ Հրեական պետության հռչակումը պատերազմական հարձակում առաջ բերեց նրա վրա արաբական պետությունների՝ Անդրհորդանանի, Եգիպտոսի, Սաուդյան Արաբիայի, Իրաքի, Սիրիայի և Լիբանանի կողմից, որոնց կառավարությունները իրենց զորքերը ուղարկեցին երիտասարդ, նորաստեղծ պետության դեմ։

Ինչու՞ են պատերազմում։ Չէ՞ որ Պաղեստինի ազատագրումն օտարերկրյա կախումից հնարավորություն է տալիս Պաղեստինում ապրող հրեաներին և արաբներին դառնալ իրենց երկրի իսկական տերերը, այն

համապատասխանում է հրեաների և արաբների ազգային ձգտումների բավարարմանը, հնարավորություններ է ստեղծում ազատագրվելու օտարերկրյա իմպերիալիստների ազդեցությունից, մի բան, որ պետք է ողջունվեր Մերձավոր Արևելքի բոլոր ժողովուրդների կողմից, որոնք վաղուց ի վեր պայքարում են ինքնուրույնություն ձեռք բերելու, իմպերիալիզմի լծից ազատագրվելու համար։

«Անտարակույս, Պաղեստինում ծագած պատերազմական կոնֆլիկտի պատճառներից մեկը Պաղեստինի հարցում Անգլիայի և Ամերիկայի Միացյալ Նահանգների բռնած դիրքն է։ Երկրորդ պատճառը, որն անխզելիորեն կապված է առաջինի հետ, այն է, որ արաբական մի քանի պետությունների կառավարողներ իրագործում են մի քաղաքականություն, որ ամենևին չի համապատասխանում արաբական ժողովրդի շահերին, այլ ենթարկված է օտարերկրյա շահերին ու ազդեցություններին» («Պրավդա»)։

Բանը նրանումն է, որ Պաղեստինի անկախությունը, այդ երկրում ապրող ինչպես արաբների, այնպես էլ հրեաների ինքնուրույն պետության ստեղծումը բախվում է անգլո-ամերիկյան իմպերիալիստների շահերին։ Դրանով, միմիայն պիտի բացատրել այն, որ



տատանցիորեն Պաղեստինի բաժանման մասին Միավորված Ազգերի Կազմակերպության որոշման ընդունման պահից ի վեր, համառ պայքար է տարվում այդ որոշման իրագործման դեմ։ Այդ պայքարը գլխավորում է Անգլիան, որը պաշտպանություն է գտնում ԱՄՆ-ի կողմից։ Եթե Անգլիան ու ԱՄՆ-ը իրականում օգնեին Պաղեստինի հրեաներին և արաբներին իրագործելու ՄԱԿ-ի որոշումը, ինքնին հասկանալի է, որ այդ երկրում հարցերը կլուծվեին խաղաղ ճանապարհով և Մերձավոր Արևելքում չէին ծավալվի պատերազմական գործողություններ։

Հենց սկզբից, երբ անցյալ տարվա գարնանից Միավորված Ազգերի Կազմակերպության մեջ հարուցվեց Պաղեստինում բնակվող ժողովուրդների ճակատագրի հարցը, Սովետական Միությունը բռնեց սկզբունքորեն պարզորոշ դիրք, պնդելով, որ ամբողջովին ապահովվեն և պաշտպանվեն թե արաբական և թե հրեական ժողովուրդների շահերը։ Սովետական Միությունը պաշտպանում էր արաբական—հրեական երկմիասնական դեմոկրատական անկախ պետություն ստեղծելու անհրաժեշտությունը։ Իսկ եթե այն պատշաճ պաշտպանություն չգտնի արաբների և հրեա-

ների կողմից, ապա Սովետական Միությունը հնարավոր էր համարում նաև Պաղեստինի բաժանումը երկու ինքնուրույն անկախ պետության՝ հրեական և արաբական։ Եվ, որովհետև արաբներն ու հրեաները համաձայնության չեկան երկմիասնական պետություն ստեղծելու, Սովետական Միությունը արտահայտվեց Պաղեստինի բաժանման օգտին։ Ելնելով դրանից, Սովետական Միությունը ճանաչեց Միավորված Ազգերի Կազմակերպության որոշման համապատասխան ստեղծված Իսրայելի երիտասարդ պետությունը։

«Սովետական Միությունը պաշտպանել է և պաշտպանում է արաբական պետությունների ու ժողովուրդների անկախությունը։ Սակայն պետք է պարզ լինի, որ պատերազմ մղելով հրեական երիտասարդ պետության դեմ, արաբները պայքարում են ամենևին էլ ոչ իրենց ազգային շահերի համար, ոչ իրենց անկախության համար, այլ սեփական անկախ պետություն ստեղծելու նկատմամբ հրեաների իրավունքի դեմ» («Պրավդա»)։

Սովետական ժողովուրդը միշտ էլ մեծ համակրանքով է տոգորված եղել արաբական ժողովուրդների ազգային-ազատագրական շարժման նկատմամբ։ Սակայն սովետական մարդիկ չեն կարող չդատապարտել արաբա-



կան պետությունների ագրեսիան, որն ուղղված է հրեական ժողովրդի իրավունքի դեմ, նրա հռչակած Իսրայելի երիտասարդ պետության դեմ։

Սովետական Միությունը հանդիսանում է խաղաղության և ժողովուրդների բարեկամական համագործակցության վճռական և հետևողական պաշտպանը, նրանց ազատության ու ազգային անկախության հուսալի պատվարը։ Իր վերաբերմունքով դեպի մյուս պետությունները, համասարապես նաև երկրի ներսում, Սովետական կառավարությունը անշեղորեն իրականացնում է ժողովուրդների միջև իրավահավասարության քաղաքականությունը։


ՀՐԵԱԿԱՆ
ԻՍՐԱՅԵԼ
ՊԵՏՈՒԹՅՈՒՆ
Երկաթուղագիծ
ԼԻԲԱՆԱՆ
ՍԻՐԻԱ
ԱԿՐԱ
ԱԿՐԱ
ՀԱՅՖԱ
Տիբեր
Տիբերիադա լիճ
Նազարեթ
Գալիլիա
Աֆուլա
Բեյսան
ՆԱԲԼՈՒՍ
Տուլկարմ
ՏԵԼ-ԱՎԻՎ
ՅԱՖԱ
ԱՐԱԲ.
Լիդդա
Ռամլե
ԵՐՈՒՍԱՂԵՄ
ԳԱԶԱ
Խեվրոն
ԲԻՐ ՇԵԲԱ
ԱՄՄԱՆ
ԲԻՐ ՇԵԲԱ
ՆԵԳԵՎ
ԵԳԻՊՏՈՍ
ԱԿԱԲԱ
ԵՐՈՒՍԱՂԵՄԻ ՍԱՀՄԱՆՆԵՐԸ
Շուֆաթ
Մոցա
ԵՐՈՒՍԱՂԵՄ
Էյն քարիմ
Սիլվան
Աբու դիս
Բեյթ ջալա
ԲԵԹՂԵՀԵՄ
Բեյթ սախուր

